**ՀԱՅՐԵՆԻՔԻ ՍԻՐՈՎ**

# ԿԱ՛Ն ԱՅՍՊԻՍԻ ՄԱՐԴԻԿ ՍԱՀՄԱՆԱՊԱՀ ԳՅՈՒՂՈՒՄ




Բերքաբեր (նախկին Ջողազ) գյուղը Իջևանի շրջանի ամենածայրամասային գյուղերից մեկն է՝ փոքրաթիվ բնակչությամբ, բազմաթիվ խնդիրներով և ամեն օր՝ ադրբեջանցիների կրակոցների տակ... Սակայն բերքաբերցիները շատ քաջ են, հայրենասեր և պահպանում են իրենց գյուղն աչքի լույսի պես: Ավելին, ի թիվս աշխատասեր հողի մշակների, այգեգործների, անասնապահների, ուսուցիչների, այս գյուղում կան նաև հետաքրքիր, բանիմաց, ինքնատիպ մարդիկ՝ Թելման Մայիլյան, Հենրիկ Արզումանյան, Նորայր Արզումանյան, այլք: Ցավոք, թշնամու գնդակին զոհ գնաց լավագույն տղաներից մեկը՝ գյուղի երկրապահ ջոկատի հրամանատար Մանվել Մուրադյանը...

Երկու տասնյակից ավելի գրքերի հեղինակ, ճանաչված և շնորհաշատ բանաստեղծ, արձակագիր, թարգմանիչ, ՀՀ գրողների միության և ՀՀ ժուռնալիստների միության անդամ Թելման Մայիլյանի մասին ուկրաինացի նկարիչ, բանաստեղծ-թարգմանիչ, Գրիգոր Նարեկացու «Մատյանը» ուկրաիներեն թարգմանելու համար «Մովսես Խորենացի» մեդալի արժանացած Միրոն Նեստերչուկը գրել է. «Շարունակելով մեր նախնիներ Տարաս Շևչենկոյի, Իվան Ֆրանկոյի, Լեսյա Ուկրաինկայի և այլոց փառավոր ուղին՝ Թելման Մայիլյանը հետևորդն է հայ մեծերի՝ Գեղամ Սարյանի, Ավետիք Իսահակյանի, Սիլվա Կապուտիկյանի, Լևոն Միրիջանյանի, հայերի և ուկրաինացիների գրական դարավոր կապերի ամրապնդման սուրբ գործի»:

Ավելին չես ասի...

Բանաստեղծ, արձակագիր Նորայր Արզումանյանը հետաքրքիր անհատականություն է, իր գործի նվիրյալը: Արդեն գրական վաստակի տեր է՝ հինգ ստվարածավալ, բազմաժանր գրքերի հեղինակ (արձակ, բանաստեղծություն, հրապարակախոսություն, հուշեր, առակներ, աֆորիզմներ): 1965-ից նա ղեկավարում է գյուղի ակումբ-գրադարանը: Աշխատավարձ վճարեն-չվճարեն՝ նա անձանձիր, անտրտունջ ղեկավարում, շարունակում է նվիրյալի իր գործը... Եվ արդեն Բերքաբերում առկա է ինքնատիպ պատմա-ազգագրական մի թանգարան՝ 8000 հետաքրքիր ցուցանմուշներով, Հայաստանում և նախկին ԽՍՀՄ-ում ապրող մեր ականավոր հայրենակիցների՝ գրականության, արվեստի, գիտության, ռազմական և քաղաքական շատ գործիչների մասին պատմող հուշնամակներով, լուսանկարներով, ձեռագրերով, ընծայագրված գրքերով, այլ նյութերով...

Թշնամու արձակած ռումբից տունն ավերվել էր, իսկ նա մխիթարվում էր նրանով, որ ռումբն ակումբի վրա չի ընկել...

Նորայր Արզումանյանի գործունեությունն արժանի է ուսումնասիրման և գնահատանքի...

Ընդգծված վառ անհատականություն է Բերքաբերի միջնակարգ դպրոցի տնօրեն Հենրիկ Արզումանյանը, որ համատեղության կարգով դասախոսում է նաև ԵՊՀ Իջևանի մասնաճյուղում: Հենրիկ Արզումանյանը ճանաչված գյուտարար է և հանրությանը հայտնի էլեկտրոնիկայի բնագավառում քանից ավելի իր գյուտերով: Նա ակտիվորեն մասնակցել է նաև սահմանների պաշտպանությանը, նորոգել մարտական մեքենաների կառավարման էլեկտրոնային համակարգերը, արդյունավետ ռադիոկապ ապահովել շտաբի, սահմանապահ վաշտերի միջև... Տաղանդավոր մանկավարժը բազմիցս կազմակերպել է նաև մարզային ու հանրապետական միջոցառումներ՝ համեմված էլեկտրոնային ինքնաշխատ սարքերով, գեղեցիկ երաժշտական-նկարչական ձևավորումներով:

Գրում է նաև բանաստեղծություններ, հրապարակախոսական հոդվածներ: Հրատարակել է «Փիլիսոփայական խոհեր և մաքսիմներ», «Անուրջների միջով քայլող ստվերը» գրքերը: Մանկավարժության բնագավառում ունեցած ակնառու հաջողությունների համար 2007 թ. ՀՀ նախագահի կողմից պարգևատրվել է «Մովսես Խորենացի» մեդալով:

Հանրապետությունում, նրա սահմաններից դուրս ճանաչում, հարգանք վայելող Հենրիկ Արզումանյանի պրպտուն միտքը ստեղծագործական նոր հորիզոններ է փնտրում: Հաջողություն մաղթենք նրան և ասենք ամենակարևորը. սահմանամերձ գյուղի համար ամենածանր պահերին անգամ նրանք՝ Թելման Մայիլյանը, Նորայր Արզումանյանն ու Հենրիկ Արզումանյանը, մշտապես գյուղում են եղել՝ սահմանապահ ժողովրդի հետ, կռվող ազատամարտիկների կողքին: Գյուղն էլ հզոր ու կանգուն է իր հողին:

Սահմանապահ գյուղը կանգուն է, այո՛, իր այսպիսի որդիներով:

Փա՛ռք ու պատիվ նրանց...

Վերոհիշյալ հոդվածը մեջբերեցինք անվանի պետական-քաղաքական, հասարակական գործիչ, հայրենասեր հայուհու՝ Ջեմմա Անանյանի «Ապրելու երաշխիքը. Հող, Հավատք, Գիր... Հիշողություն» («Նաիրի» հրատարակչություն, 2014 թ.) գրքից:

Ազնիվ ու հայրենասեր շատ այլ մարդկանց մասին պատմող ու նրանց խոսքը ամբարող բազմաթիվ նյութեր կան այս հիանալի հուշագրությունում: Նրանք հողի մշակներ են, այգեգործներ, բանվոր ու գյուղացի, ուսուցիչ ու բժիշկ, դերասան ու մշակութային գործիչ, գրող ու լրագրող, պետական պաշտոնյա ու հասարակական գործիչ, մտավորական, հայրենյաց պաշտպան... Գրքի ամեն մի էջը, բոլոր նյութերը լի են մեր երկրի սահմաններն անառիկ պահելու, մեր հայրենիքը՝ Իջևանից մինչև Արցախ հզորացնելու ջատագովությամբ: Բազմաբնույթ այդ նյութերում արտահայտված է Աղստևի հովտի հայրենասեր դստեր, շիտակ ու բազմափորձ գործչի՝ առ յուր ժողովուրդն ու երկիրը, ազգային շահերն ունեցած անսահման սերը, դրանք պահել-պահպանելու, բազմապատկելու աներեր գործնականությունը: «Ապրելու երաշխիքը» մեր մաքառման ու գոյակերպի, մեր գրի ու լուսավոր հավատի, ազնիվ ու աշխարհաշեն մարդկանց ու մեր նորոգ պետականության կայացման պատմությունն է», – գրքի առաջաբանում գրում է բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր, ՀՀ գիտության վաստակավոր գործիչ, ԵՊՀ հայ գրականության ամբիոնի վարիչ Սամվել Մուրադյանը:

Ազգային ինքնության պահպանման ու հայրենիքի հզորացմանն ու շենացմանը միտված ուշագրավ այս գիրքը Ջեմմա Անանյան լուսավոր մարդու, հայրենաշեն գործչի երկրորդ գիրքն է: Ավելորդ չի լինի, եթե նշենք, որ Ջեմմա Անանյանի նախորդ՝ «Հայոց օջախը՝ պատանդ» հուշագրությունը՝ երկու հրատարակությամբ, մեծ արձագանք գտավ Հայաստանում, Արցախում և սփյուռքում: Այս գիրքը իր ժողովրդի ու հայրենիքի նվիրյալի՝ կենսակերպով, կենսափորձով հաստատված, ամրագրված խոսուն և ուսանելի ուղերձն է ներկա և գալիք սերունդներին առ այն, որ հայ ժողովրդի ապրելու երաշխիքը մեր հողն է, մեր հավատը, մեր գիրը և հիշողությունը:

*Արևիկ ՎԱՐՇԱՄՅԱՆ*

# ԱՐԱ ԱԼՈՅԱՆ ԲԱՆԱՍՏԵՂԾԻ ԼՈՒՅՍԸ

«Գործարար»-ին եմ ներկայացնում Արա Ալոյան բանաստեղծի ստեղծագործությունները: Ասեմ, որ «Լույս դառնալուց առաջ» խորագրով ժողովածուին ծանոթացել եմ 2005 թ. Դոնի-Ռոստովում: Խորագիրն արդեն իսկ ինձ հուշեց հեղինակի զարմանահրաշ ու բովանդակ հոգետան մասին: Նոր շնչով ու մատուցման նոր ձևով իմ դեմ բացվեց Արա Ալոյան մարդ-բանաստեղծ-մեծ երազող արարածի ներաշխարհը. նարոտ ու գունագեղ, բառերին տիրապետող վարպետի վստահությամբ ու նրա իշխանության տակ հեղինակը կառուցել է մի աշխարհ ներդաշնակ իր սիրուն ու տառապանքին, մտացածինին ու իրականին: Բայց խոսքս հիմա ոչ թե նրա այդ ժողովածուի մասին է, այլ հետայդու բանաստեղծության լույսով ու լույսի ներքո հասունացած նրա նոր ստեղծագործությունների և ընդհանրապես նրա պոետական արարչագործության մասին: Նրա մեկ բանաստեղծությունն անգամ, եթե վերլուծենք, ապա կնկատենք, թե որքան բազմանկյուն, բազմաշերտ ու խորածավալ է նրա հոգեոլորտը, որքան սուր է նրա տեսանող աչքը, որքան սլացիկ է նրա միտքը և, որքան նկատելի են դառնում իրեղեն ու հոգևոր աշխարհի փոխկապակցումը միմյանց հաջորդելով, լրելով, բացատելով ու հաստատելով: Նարեկացու ավանդական դպրությամբ մակդիրներով հարստացրած, սեփական ձևավորմամբ լրելով, բանաստեղծի ասելիքը մի դյութահունչ մեղեդայնությամբ հնչում է, տարածվում է, աճում, բարձրանում հասնելով իր եզրահանգմանը: Հավերժ պրպտող, ներսույզ, հոգևոր և իրական աշխարհի համեմատություններով նա գտնում է սեփականը եզակին, յուրաշխարհիկ մի գունագեղությամբ ուր օբյեկտի, սուբյեկտի և աշխարհաճանաչողության եռակապում նրա ներխոկվ կիզակետրոն եսն է.այստեղ է սկսվում ձգողական ու կենսական շարժը ի հայտ բերելով բանաստեղծությունը, ասել է թե իրեն: Նա ներեզերքներին հասնողի վարպետությամբ թափանցում և հասնում է ճանաչողության այն սահմանին, ուր բացվում է արվեստի բարձրագույն աշխարհը, գեղագիտական մտքերի մաքուր գոյությունը. տարակուսանք չէ սա, այլ գերագույն ինքնորոշիչ տարր, երբ տեսած ու տեղեկացված հեղինակը ճանաչածի ու անհասի, ենթագիտակցականի ու գիտակցականի, զգացմունքի ու մտքի համեմատությամբ փորձում է«աստվածային գեղից» մի անկրկնելի գույն կամ երանգ ձեռք բերել.

*«Ես ի՞նչ հանեմ բազում արտասանված խոսքից...*
*Բառարանից սիրո և սիրաբառ խորքից...»*

Մտահոգ ու ներհակ, կշռելով, չափել-ձևելով, հեղինակն ինքը որպես ինֆորմացիոն կենտրոն, իր էներգետիկ միջուկի Սիրո ուղղորդությամբ, «չհոմանիշվող», «չարծաթվող», «իր սեփական ոսկու» մաքրագույն անաղարտությանն է մոտենում իրեն բնորոշ զուլալին, ուր, ասես, յուրային և ոսկական է նույնիսկ զգացմունքը, բույրը, գույնը, լեզվառճը դյուրին ու անբռնազբոսիկ, թախծալի ու լուսեղ, գեղեցիկ ու սեփական սրտին ռիթմիկ կատարյալ ու ներդաշնակ: Երաժշտական



ստեղծագործության պես հաջորդական աճում է թեման. տողը հասնելով իր կուլմինացիոն կետին գալիս է ասելու տիեզերքի և հոգու նույն կառուցվածքայնության մասին. դա այնքան համասահք է ընթանում, որ տրված ընթերցանության հոսքին հանկարծ հայտնվում ես վերոլորտներում այն բարձունքին, ուր հեղինակի լույսի աղբյուրն է կինը, սիրուհին կամ ընդհանրապես «ճերմակագռ» տիրուհին.

«Որ քո ճերմակ Գոյին Չեռագրվի մաքուր,
Ասեղգործվի ծաղիկ ու անցավել հոգում... »:

Ինձ այս տողերը վարդարանի աղոթքաշար են հիշեցնում, սրբագռ արարածին մատուցվող «հոգեքաղ», օծում, մի սրբազան ծիսակատարություն, հատիկ-հատիկ, քայլ առ քայլ մոտեցող անցում, երբ իրեղենը փշրած սուբյեկտը հասնում է ոգեղենի սահմանին, օբյեկտին, ուր և կայանում է մտերմիկ ու միալեզու երկխոսություն պարզ, անմիջական, հասու, անպաճույճ առանց միջնորդի:

Ներխորքերի որոնումներից վերադարձող «ձիթենյաց ճյուղով Ավետաբերը», գտնելով զգացմունքի և գիտակցության անհայտացող սահմանը, հասնելով Ոգու Կոսմիկական նույնությանը, տալիս է հոգեփրկչության «լույս պտուղը» բանաստեղծությունը, որն արդեն անցել է հոգևոր փորձությունների «գողգոթայով» և բյուրեղային լուսարձակմամբ շողշողում է իր հաղթածիրում:

Ես խոսեցի Արա Ալոյանի մեկ բանաստեղծության մասին, իսկ նրա ստեղծագործությունները շա՜տ են. ուշադրավ է նաև նրա արձակը...

***Նաիրա ՍԻՄՈՆՅԱՆ***

## *Արա ԱԼՈՅԱՆ*

***

Ես ի՞նչ հանեմ բազում արտասանված խոսքից,
Բառարանից սիրո և սիրաբառ խորքից,
Որ չլինի եղած, հոմանիշվի որ Քեզ,
Որ չլինի արծաթ ու չլինի ոսկի,
Որ քո ճերմակ Գոյին Չեռագրվի մաքուր,
Ասեղգործվի ծաղիկ ու անցավել հոգում,
Ես քեզ ինչպե՞ս, ինչպե՞ս սիրեմ այսօր,
Որ բացական չզգաս ներկա ժամանակում:
Ես ի՞նչ շերտեմ ներսից և ինչ բերեմ Ընծա,
Որ չլինի միայն նկար, բառեր ու Ձայն,
Ես քեզ սիրեմ այսօր չօրալրվող սիրով,
Միայն թե ինձ սիրես, թեկուզ մեկ օր ցնծա՜մ:

***

Եղած-չեղածս անքնություն է,
անտնություն է առանց քեզ,
Եթե դու չկաս կրկնություն է,
Որ թաքուն-թաքուն պիտի երգես:

Եղած-չեղածս անտնություն է,
Հիմնասյուներդ...ձեռքերդ չկա՜ն,
Հեռու է հույսի արթնությունն էլ,
Ձեռքերդ – քանդո՛ղ, արարչակա՜ն:

Եղած-չեղածս անզնություն է,
Սուտ արժեքներ են, տուրևառում,
Այս դրախտային բախտ-կնությունը,
Այս դժոխային ավարառուն:

Եղած-չեղածս արքայություն է,
(անունս վկա, չե՛մ էլ կեղծի),
Եվ քո գրավոր ներկայությունը,
Եվ իմ մահերը բանաստեղծի...

***

Բժշկիր Օրը, եթե կարող ես,
Եթե կարող ես վիրակապ հյուսիր
արևաթելից, որ հարկավոր է
արյունոտ Սիրուն, անարյուն Հույսին:

Բժշկիր օրը, եթե կարող ես,
Եթե կարող ես ներարկիր երազ.
Լույսը հեռացրու՛, թե խանգարում է
Քո լույսը տեսնել և սահիր վրան

Իբրև թե բամբակ զթաքույր ձեռքի...
Եթե կարող ես – բժշկիր Օրս,
Եթե կարող ես հոգի ս բժշկիր,
մարմինիցս շուտ չմեռնեմ որ ես...

***

Զարմացել ես հաճախ, թե այդ ինչպե՞ս, ինչու՞
չես խորտակվել սաստիկ ձնաբքի ներքո,
Չիմանալով, հեռվից քեզ օրհնում եմ երգով,
Որ դու...սիրելիիդ հասնես անգայթ, անչար:
Զարմացել ես հաճախ, ի՞նչ հրաշքով, ինչպե՞ս,
Այդ ինչպե՞ս է եղել, որ չես ընկել անդունդ,
Երբ խավարն է իջել հողմերի հետ անդուր-
Չիմանալով, որ հենց ես եմ կամուրջն անտես...
Զարմացել ես հաճախ, ինձ քո ճամփից շեղել
Որպես մի ուժասպառ ու մի թափառ կույրի,
Բայց իմ սիրտը երկար սիրով քեզ կկրի,
Որ երջանիկ լինես, եթե դեռ չես եղել...

**20Ձ**

***

Դու գնացիր, բայց իմ ներսով դեռ պատժում ես,
Դու գնացիր, բայց մնում ես, որ ... որբ չզգամ,
Դու գնում ես անվերադարձ, ամեն անգամ,
Դու գնացիր, բայց դու գարուն և աշուն ես:

Դու մնացիր, բայց գնալդ նստեց մրուր,
Դու մնացիր, բայց գնում ես աչքս դեպի
որպես արցունք դառնահուշէ, և ոչ՝ ժպիտ,
Դու մնացիր՝ հանց անգնա սեր ու մրմուռ:

***

Եթե չեն լսում քո ճիչն էլ արդեն,
ուրեմն արդեն նեխում ես փոսում,
Կարևոր չէ՝ ո՞ր, անլաց, անվարդեր,
Եվ կարևոր չէ, թե ինչ են խոսում:

Եթե չեն տեսնում քո արցունքը բիլ,
ուրեմն արդեն գլորվում ես ներս,
Կարևոր չէ՝ ինչ թաց է քո կոպին
Ասեղնագործվել և...սիրաաղերս...

Եթե չեն կարդում քո գրածն-արյուն,
Որ բաց վերքի հետ թղթաբիծ կաթեց,
Կարևոր չէ՝ Վա՞րն ի՞նչ է հանձնելու,
Արյունն իր թե՝ Բառ: Երկուսն էլ պղծեց:

Բայց մենք չենք մեռնի, հենց այդպես, քանզի,
եկել ենք աշխարհ. ապրածն այնտեղ էր
մայրատիրությունում ու սրտազնիվ,
Իսկ այստեղ մեռած, անէ, անտև է...

***

Մենք ապրում ենք, որ մահը չմեռնի,
Եվ մեռնում ենք, որ կյանքը մեր թվա՛,
Որպես գնացող-եկող երդվյալ,
Սայթաքումներով խոտոր ճեմերի:

Մենք ապրում ենք, որ ինքնասպանության
հասցնենք սիրուն, որ հենց Ի՛նքն է, Կա՛,
Մենք սիրված՝ իբրև բարձրադիր նկա՛ր,
Եվ իբրև պատից նայող հանգուցյալ...

***

Որդեծին Մարիամ, հոգեհղացում,
Ես, որ սուրբ եղա քո որովայնում,
Եվ կորցրի հմայքն իմ օրը այն նույն,
Երբ մոգերն եկան կեսգիշերին ցուրտ:

Քանզի մեծամիտ այս Ներքն-ծիրում,
ՀրաշաՄԱՆՈՒԿն էր մեկ ու արդարն,
Որ մանուկների սիրով զարդարել
Ուզում էր կյանքը դարձնել սիրուն:

Բայց ես էլ կարգին որդություն չարի,
Եվ մանկությունս էլ անհոգ չէր, Մարիամ,
Եղա բոլորի մանուկն համարյա,
զի Հոր կա մքն էր այդ, չէ՛ս հակաճառի:

Ու ես քայլեցի ծովի վրայով,
Եվ գիշերեցի լեռնաքարին պաղ,
Որ ծեր երկիրն այս մանկանա խաղաղ,
Ու Հորը փարվի՝ մանկաճիչ, այո՛...

Մանկածին Մարիամ, Մայր իմ առաջին,
Սկզբնասուրբ Դու կին, քույր ու սեր ու սեր,
Իգականների Էույթ անուզել,
Դու Մայր՝ անխռով, առանց հառաչի:

Կվերադառնա՛մ, քիչ էլ սպասի՛ր –
Շուտով կդառնամ երեւուներեք,
Ինձ էլ կխաչեն մի գոնատ ցերեկ,
քանզի ցերեկը լույս չէ անբասիր:

Կվերադառնա՛մ՝ անառակ որդու
Անհամեստությամբ, մանկական երգով՝
Քո մարիամական չափը ընդգրկող,
Որ քեզ որբ չզգաս, Մա յր զգաս որ Դու...

*Բանահավաքի նոթատետրից*

# ԻՄ ՈՒ ԲՈԼՈՐԻ ՀԱՄԱՐ

**Խոսքի ուժը քիչ բառերով շատ բան**
**արտահայտել կարողանալն է:**
***ՊԼՈՒՏԱՐՔՈՍ***



### *Օրվա առակը՝*

## Երեք հացը

Մի մարդ ամեն օր գործից տուն դառնալիս երեք հաց էր առնում:
Ընկեր, հարևան, ով տեսնում էր, հարցնում էր.
– Էդ ինչի՞ ես ամեն օր գնալիս 3 հաց առնում:
Էդ մարդը ոչ մեկին չէր պատասխանում ու սուսուփուս շարունակում էր ճամփան: Վերջը որ շատ են հարցերով նեղում, մի օր էլ ասում է.
– Մի հացը փոխ եմ տալիս, մի հացն էլ՝ պարտք, իսկ երրորդը ես ու իմ կնիկն ենք ուտում:
Էս հարցնողները, բան չհասկանալով, զարմացած իրար են նայում: Հաջորդ օրը, երբ նորից է էդ մարդը երևում, ասում են.
– Ախպե՛ր ջան, ախր երեկվա ասածիցդ բան չհասկացանք, մի բացատրիր՝ տեսնենք:
– Մի հացը պարտք եմ տալիս, իմ մոր ու հոր համար է, նրանք էլ ինձ են հաց տվել, պահել մեծացրել: Մեկն էլ փոխ եմ տալիս երեխաներիս, որ հետո էլ նրանք իմ տվածի փոխը մեզ հասցնեն: Դե, մեկն էլ ես ու իմ կնիկն ենք ուտում, – ասում է անցորդն ու շարունակում ճամփան:

### *Օրվա առածը՝*

Դմակավոր ոչխար ես, քո ետևը ծածկիր:

### *Օրվա ճշմարտությունը՝*

Խուլին չես պատմի,
Կույրին ցույց չես տա,
Տխմարին չես ապացուցի:

### *Օրվա ուղիղ ու պարզ միտքը՝*

Աղքատությունը չի բուժվում, ապացուցված է անվճար բժշկության կողմից:

### *Օրվա քառատողը՝*

## Օմար Խայյամ

Ելել ես ցեխից, իշխան ես արդեն,
Սակայն քո ուղին ինչքան էլ հարթես,
Հիշիր, որ հանկարծ չար աչքի չգաս,
Իշխանն անցողիկ է, ցեխն է հարատև:

*Դեսից դենից հավաքեց Լևոն ԽԱՉԱՏՐՅԱՆԸ*

# ՀԱՅԵՐԵՆ ԱՌԱՋԻՆ ՊԱՐԲԵՐԱԿԱՆԸ. «ԱԶԴԱՐԱՐ»

Հայ անվանի մտավորական, ազգային գործիչ Հարություն Շմավոնյանը Հնդկաստանի Մադրաս քաղաքում 1789 թվականին հիմնում է սեփական տպարան՝ իր իսկ հորինած տառերով, և հրատարակչական ազգանվեր գործունեություն ծավալում: Նա տպագրում է կրոնական, ազգային ուղղվածությամբ յոթ գիրք և մեկ գործնական ժողովածու: Որոշ ժամանակ անց՝ 1794 թ. հոկտեմբերի 16-ին, լույս է ընծայում նաև առաջին հայ պարբերականը՝ «Ազդարարը»: Այն փոքրիկ ծավալ ուներ, նկարազարդ էր, լույս էր տեսնում ամեն ամիս: Ոմանք այն անվանեցին լրագիր, ոմանք՝ ամսագիր, բայց դա չէ կարևորը, այլ այն, որ «Ազդարարը» էական, խոշոր դեր կատարեց հայ լրագրության սկզբնավորման, ձևավորման և հետագա զարգացման գործում:

Սկզբում ուներ 28 բաժանորդ, ըստ երևույթին հենց տպարանի աշխատողները և Շմավոնյանի հիմնած մադրասյան խմբակի անդամները: Խմբակը, որ բաղկացած էր հայրենասեր երիտասարդներից, նաև «խմբագրական» լայն կոլեգիայի նման մի մարմին էր թերթի համար. խմբակի անդամները նախապես կարդում, քննարկում էին տպագրվելիք նյութերը, առաջարկություններ անում, ապա ուղարկվում շարելու:

«Ազդարարում» տպագրվում էին բանաստեղծություններ, առակներ, զրույցներ, պատմվածքներ, հրապարակախոսական հոդվածներ, լրատվություն, հայտարարություններ: Թերթի էջերում տեղ էին գտնում նաև անգլերեն լրագրերից քաղված, հայերեն թարգմանված զանազան նյութեր և այլն: Պարբերականը պատմում էր նաև Անդրկովկասի քաղաքական անցքերի, մասնավորապես Սահմեդ խանի արշավանքների մասին: Այն տպագրել է նաև Հ. Այուբյանցի՝ հնդիկ ժողովրդի ազատագրական պայքարին նվիրված «Պատմություն Հեյդարալի խանի» վեպը և շատ այլ հետաքրքրական թղթակցություններ:

Նյութերի լեզուն հիմնականում գրաբարն էր, մերթ ընդ մերթ էլ որոշ հրապարակումներ տպագրվում էին ջուղայեցիների ռամկախառն աշխարհաբարով, քանի որ թերթի ընթերցողների մեծ մասը Իրանի Նոր Ջուղայից Հնդկաստան ներգաղթած (ինչպես Շմավոնյանն էր) հայերն էին: Շմավոնյանը, լավ իմանալով նրանց հետաքրքրությունները, տպագրում է նաև Խաչատուր Ջուղայեցու բավական ստվար «Պատմություն պարսից» պատմական ուսումնասիրությունը, որը պատմական ակնարկների նկարագրական մի հավաքածու-ժամանակագրություն էր՝ համեմված կրոնական-բարոյախոսական դատողություններով և հրապարակախոսական խոհերով:

Իր բազմաբնույթ հրապարակումներով «Ազդարարն» անդրադարձել է հայ ժողովրդի լուսավորության, ազգային ինքնաճանաչողության, հայրենիքի ազատագրությանն առնչվող խնդիրների և լուսաբանելով այդ ամենը՝ հասցրել իր ընթերցողներին՝ նրանց գիտակցության մեջ արթնացնելով և ամրապնդելով


ԱԶԴԱՐԱՐ

1794

ազատատենչության, հայրենասիրության վսեմ ոգին: Այդ թղթակցություններից մեկն էլ, օրինակ, «Բարեկամ» ստորագրությամբ, կոչ է անում պայքարել տգիտության դեմ: Դա «Ազդարարի» նշանաբանն էր: «Բացէք դպրատուն ըստ այլոց ազգաց և մուծէք ի նա զորդիքս գռեհկաց…», – քարոզում է հոդվածագիրը: Շմավոնյանը կոչ է անում ուսման, դաստիարակության միջոցով օժանդակել հայ ժողովրդի մշակութային վերելքին և քաղաքական ազատության գործին: Թեև «Ազդարարի» նյութերի հյուսվածքը, վավերագրերի, հոդվածների լեզուն, խմբագրվածության որակն ու աստիճանը, նյութերի տեղաբաշխումը էջերում, տեխնիկական ձևավորումը պարզունակ էին, ոչ այնքան որակով (այդ ժամանակ Եվրոպայում ու Ռուսաստանում հրատարակչական-տպագրական գործն ավելի բարձր մակարդակի էր), պարբերականն ուներ շատ ընթերցողներ և համբավ: Չմոռանանք նաև, որ դա առաջինն էր հայ իրականության մեջ և հրատարակվում էր վաճառականների օժանդակությամբ, ասիական երկրում, կղերականության սահմանափակումների, ճնշումների ներքո: Այդ դժնի պայմաններում, գաղափարական առումով, Շմավոնյանը համենայն դեպս գտնում է ինչ-որ քաղաքական նոր ուղենիշ, որը միավորում էր հոգևորականներին ու վաճառականներին: Սակայն պայքարն անհավասար էր: Լույս է տեսնում «Ազդարարի» ընդամենը 18 համար (վերջինը՝ 1796-ին): Լրագիրը փակվում է, Հարություն Շմավոնյանին մեկուսացնում են տպագրական գործից:

Հարություն Շմավոնյանը սոսկ հրատարակիչ չէր, այլև ազատագրական վսեմ գաղափարների դրոշակակիր: Նա շատ լավ էր գիտակցում պարբերականի դերը և ձգտում էր վեհ գաղափարներ սերմանել ընթերցողների հոգիներում:

Անկախ ամեն ինչից հայ անդրանիկ պարբերականը՝ «Ազդարարը», շատ կարևոր նշանակություն ունեցավ հայ հասարակական-քաղաքական մտքի ձևավորման, գաղափարների հասունացման, տարածման գործում: Նշենք նաև, որ ի տարբերություն նույնիսկ եվրոպական առաջին պարբերականների, որոնք ընդամենը առևտրական բյուլետեններ էին, «Ազդարարը» գիտամասսայական, գրականհասարակական բնույթ է ունեցել, աչքի ընկել բարձր գաղափարախոսությամբ: «Ազդարարը» այն հիմքն էր, որի հիման վրա ստեղծվեցին և լրագրական գործը շարունակեցին մյուս հնդկահայ՝ «Շտեմարան» (1822 թ.), «Ազգասեր» (1845 – 1848 թթ.), «Ազգասեր Արարատյան» (1848 – 1852 թթ.), «Ուսումնասեր» (1849 – 1853 թթ., Սինգապուր), «Եղբայրասեր» (1862 – 1863 թթ.) և այլ պարբերականները: «Ազդարարի» դերը մեծ էր նաև նրանով, որ նրա օրինակով աշխարհի տարբեր գաղթօջախներում մեծ թափ առավ և լայն գործունեություն ստացավ հայ լրագրական գործը: Հետագա դարերում լույս տեսան Գրիգոր Արծրունու «Մշակը» (Թիֆլիս), «Նոր դարը» (Թիֆլիս), «Արևելքը» (Կ. Պոլիս), Հարություն Սվաճյանի «Մեղուն» (Թիֆլիս), Հակոբ Պարոնյանի «Թատրոնը», Արշակ Չոպանյանի «Անահիտը» (Կ. Պոլիս), «Ապագա» (Փարիզ), «Պայքար» (Բոստոն), «Ազգագրական հանդեսը» (առաջին հայ ազատագրական պարբերական, Շուշի, ապա Թիֆլիս, 1895 – 1916 թթ.), «Բազմավեպը» (Վենետիկ, Ս. Ղազար կղզի, հրատարակվում է առ այսօր), Մ. Նալբանդյանի «Հյուսիսափայլը» (Սանկտ Պետերբուրգ) և այլն: Հիշենք նաև «Արձագանքը» (Թիֆլիս, 1882 – 1898 թթ.), որն իր շուրջն էր համախմբել հայ մտավորականների ու գրողների մի փայլուն համաստեղություն՝ Ռաֆայել Պատկանյան, Րաֆֆի, Ալեքսանդր Շիրվանզադե, Մուրացան, Գաբրիել Սունդուկյան, Հակոբ Պարոնյան, Գրիգոր Զոհրապ, Պետրոս Դուրյան և այլք:

Նշենք նաև, որ 2004 թվականից հոկտեմբերի 16-ը նշվում է որպես Հայկական մամուլի օր:

***Արեւիկ ՎԱՐՇԱՄՅԱՆ***

# Թադեոս Էֆենդի

## (1858 – 1913 թթ.)

Երգահան, ջութակահար եւ քանոնահար Թադեւոս Էֆենդին ծնվել, ապրել, ստեղծագործել ու մահացել է Կ. Պոլսում: Համարվում է թուրքական ու արաբական դասական երաժշտության լավագույն դեմքերից մեկը: Նրա հորինած երգերը տպագրվել են տարբեր երգարաններում, ստեղծագործությունները մինչ օրս էլ մեծ համբավ են վայելում Թուրքիայում: Կատարողական բարձր վարպետության շնորհիվ հայորդին հռչակվել է Քեմանի Թադեոս անունով: Նրան անվանել են նաեւ օսմանյան դասական երաժշտության հայր:

# Գեղագիտության դաստիարակության դարբնոցը 30 տարեկան է



***Կրթամշակութային այս օջախը գիտելիքի, իմացության, ազգային արվեստի մի տաճար է.«Բոլոր նրանց համար, ովքեր սիրում են երկինք ու արև, ազատ մտածել ու ստեղծագործել, ովքեր սիրում են նկարել, այստեղ նրանց սպասում է հետաքրքիր հանդիպում գեղեցիկի, անկեղծության ու բարի երազների հետ»:***



Գեղագիտության Ազգային Կենտրոնի Վանաձորի մասնաճյուղը տոնեց արարումով արժևորված ստեղծագործական կյանքի երրորդ տասնամյակը: Ազգային այս օջախը երեք տասնամյակ իր նպաստն է բերում վանաձորցի բազում հայորդիների գեղագիտական դաստիարակությանը տալով նրանց ազատ մտածելու և ստեղծագործելու կարողություն, որն էլ նրանց մոտ ձևավորում է բարձր ճաշակ և գեղեցիկը գնահատելու կարողություն:

Կենտրոնի կամարների ներքո հայ մանուկը լիարժեքվում է գեղեցիկով, թրծվում որպես ապագայի լիարժեք քաղաքացի, մաքրվում թերարժեքության զգացումից, քանզի ծնունդն ու առաքելությունն այստեղ ի սկզբանե ազգային ու հայաշունչ է:

Արդեն երեք տասնամյակ է, որ բարությունը սերմ է տալիս այս կրթօջախում: Առաջնորդվում է գեղեցիկն ու բարին սերմանելու մտահոգությամբ և փորձում է իր սաների յուրաքանչյուր օրը տոն դարձնել:

Ակնհայտ է, որ անձի համակողմանի զարգացման համակարգում իր ուրույն տեղն ունի գեղագիտական դաստիարակությունը, որը համարվում է անձի ձևավորման հենքը և միջուկը:

*– Պարտադիր չէ, որ այսօրվա մեր սանը վաղն արվեստագետ դառնա, բայց ցանկալի է, որ նա լիարժեքորեն ձևավորվի որպես անհատ, ունենա հարուստ ներաշխարհ:*

Կենտրոնի տնօրեն Կարինե Գլոյանի համոզմունքն է: Ու այս համոզմունքով էլ տող-տող, էջ-էջ հյուսում է իր ղեկավարած կենտրոնի պատմությունը: Պարզ, անհավակնոտ պատմություն, առանց որի կրթօջախի վաղվա օրն անհնար կդառնա ու իմաստազուրկ: Այսօր էլ այդ պատմությունն ու նրա ապագան կերտում են ուսուցիչ-դաստիարակները՝ որպես սերմնացաններ հարյուրավոր հայ պատանիների ու աղջիկների զինել ու զինում են լույսով ու հմտություններով և ճանապարհել ու ճանապարհում են մեծ կյանք: Ու ամեն մի եկող սերնդի հետ կենտրոնը թարմանում է, ապրում ավելի հետաքրքիր ու բովանդակալից կյանքով, գեղեցկանում:

Այս ամենը կազմակերպողն ու կյանքի կոչողն աշխարհին ու գալիքը լուսավոր ու գունեղ տեսնելու, հավատացող գեղագիր ուսուցիչների համերաշխ մի ընտանիք է: Վահան Շահբազյանի, Սոնա Սամվելյանի նկարչության խմբակներում բացվում են գեղանկարի երփնագրերը, Ֆիրուզ Գևորգյանի կարպետի ու գոբելենի դաշտը, ցուցասրահներում կենդանանում են Լիանա Սարգսյանի, Լիլիթ Վարդանյանի տիկնիկ-խամաճիկներն ու պապյե-մաշեները, Լուսինե Խաչատրյանի, Հերմինե Մելքումյանի մանուկները խոսում, երգում են մայրենի և օտար լեզուներով, ուսումնասիրում արվեստի պատմություն:

Իսկ նրանց աշխատանքների ցուցահանդեսների աշխարհագրությունն ընդգրկում է Երևանը, Ժնևը, Օսլոն, Փարիզը, Բորդոն և աշխարհի մեծ ու փոքր այլ քաղաքները:

Կենտրոնն իր գործունեության 30 տարիների ընթացքում կյանքի է կոչել ու իրականացրել բազում կրթամշակութային ու ազգաշահ ծրագրեր, ինչն էլ հավուր պատշաճի կարևորվել ու արժևորվել է:

Հիանում ես Կարինե Գլոյանի, Անժելիկա Ջաղինյանի, Անահիտ Կիրակոսյանի ասեղնագործության ու բատիկայի աշխատանքներով, քանզի նրանց ազգային անշահախնդիր նվիրումը, ջանքերի արդյունքը դառնում են ոգեղեն արժեքներ, մնայուն ներդրում մեր քաղաքի մշակույթի շարունակվող պատմության մեջ:

**ԼԱՌՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ**
*«Գործարար» ամսագրի ներկայացուցիչը ՀՀ-ում*



Կարինե Գլոյան



Գեղագիտության Ազգային Կենտրոնի Վանաձորի մասնաճյուղի մանկավարժական կոլեկտիվը

# Հայրենասիրությունն ինձ համար դժվար բնութագրվող, բարդ զգացողություն է

**Հարցազրույց Պատմաբանների ակումբ «Վիկտորիա» պատմամշակութային հասարակական կազմակերպության նախագահ, Գյումրու Մ. Նալբանդյանի անվան պետական մանկավարժական ինստիտուտի դասախոս, պատմական գիտությունների թեկնածու, դոցենտ Լիլիթ Ասոյանի հետ**

**Հայրենիքի նկատմամբ սերը ցանկացած ազգի կարեւոր բաղադրիչներից է: Սակայն յուրաքանչյուր ազգ իր պատմության որոշակի հատվածում տարբեր շեշտադրումներ է անում՝ ողջ պետական մեքենան լիցքավորելով այդ շատ ուժեղ էներգետիկ լիցքով: Լինում է նաեւ հակառակը, երբ պետությունն է հասարակությանը լիցքավորում հայրենասիրությամբ՝ այս կամ այն խնդիրը լուծելու նպատակով: Այսպես, մեր աչքի առաջ Ռուսաստանը սեփական ժողովրդին լիցքավորում է հայրենասիրական մղումներով, ինչն, իհարկե, վատ չէ, սակայն կույր ազգայնամոլությանն ու ֆաշիզմին զոհ են գնում կամ տուժում նաեւ հայ երիտասարդները:**

**Հայ հայրենասերն այն մարդն է, ով իր գլխավոր թշնամին է համարում Թուրքիային եւ թուրք ժողովրդին, պաշտպանում է իր երկրի շահերը, պատրաստ է ամեն ինչ անել ցեղասպանության ճանաչման համար, նաեւ պաշտպանելու Ղարաբաղի, Ջավախքի ու մնացած տարածքների շահերը, որոնք հայերի պատմական հիշողությունն են կազմում՝ որպես ամբողջական «ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀ»: Հայ հայրենասերը պատրաստ է կյանքը զոհել հանուն Հայաստանի, սակայն գործնականում դա այդպես չէ:**

**Այդ պատճառով ես ստիպված եմ ասել, որ գոյություն ունի նաեւ կեղծ-հայրենասիրություն: Այն հատկապես շատ է խնջույքի սեղանի շուրջ, երբ դատարկախոսությունը դառնում է խնջույքի կարեւոր մասը: Կամ էլ, երբ շուկայում մեծ պահանջարկ ունի հայրենասիրությունը, ամենամեծ հայրենասերը դառնում է դատարկախոսը:**

***– Մի քանի խոսքով պատմեք ձեր մասին:***

– Ես ծնվել եմ Լենինականում՝ մտավորականի ընտանիքում: Հայրս կենսաքիմիկ, մայրս՝ բանասեր: Նախնական կրթությունս ստացել եմ ռուսական թեքումով թիվ 14 դպրոցում, ապա շարունակել Գյումրու պետական մանկավարժական ինստիտուտում, որից հետո ԳԱԱ Պատմության ինստիտուտում, որտեղ և 2006 թ.-ին պաշտպանել եմ թեկնածուական ատենախոսություն, ստանալով պատմագիտության թեկնածուի գիտական աստիճան, ապա՝ դոցենտի կոչում: 1997 թ.-ից մինչ օրս աշխատում եմ իմ հարազատ ԲՈՒՀ-ի Պատմության և իրավագիտության ամբիոնում՝ որպես դասախոս:

Լինելով ակտիվ և շփվող՝ գիտական գործունեությունս զուգակցում եմ հասարակական աշխատանքի հետ համարելով այն թերևս խիստ կարևոր և արդիական:

Սիրում եմ ակտիվ ժամանց՝ սպորտ, պար, երաժշտություն: Ազատ ժամանակ ունենալու դեպքում ընթերցում եմ արդի գրականություն կամ վերընթերցում սիրված ստեղծագործությունները:



***– Իսկ ի՞նչ կպատմեք ձեր կազմակերպության մասին:***

– Պատմաբանների ակումբ «Վիկտորիա» պատմամշակութային հասարակական կազմակերպությունը ստեղծվել է 2013 թ. դեկտեմբերին:

***– Իսկ ո՞րն է կազմակերպության բուն նպատակը:***

– Կազմակերպության նպատակն է միավորել պատմաբաններին և ոլորտում ներդրում ունեցող անձանց հանուն ազգային ինքնագիտակցության բարձրացման, երիտասարդների մեջ հայրենասիրության ամրապնդման, սեփական և համաշխարհային պատմության արժեվորման:

***– Ովքե՞ր են հիմնականում ընդգրկված ձեր կազմակերպության շարքերում:***

– Կազմակերպությունը դեռ երիտասարդ է, սակայն բանավակն հասուն է իր կազմով նրա անդամներն են պատմաբաններ, քաղաքագետներ, ժողովրդագրության մասնագետներ, ովքեր ուրույն ներդրում ունեն պատմագիտության ոլորտում:

***– Ինչպե՞ս և որտե՞ղ է ծավալում իր գործունեությունը:***

– Կազմակերպությունն իր գործունեությունը ծավալում է առայժմ միայն Գյումրիում, սակայն առաջիկայում պլանավորում ենք միջոցառումներ նաև հանրապետության մյուս մարզերում: Գործունեության հիմնական ուղղվածությունը սեմինարների, թեմատիկ գիտաժողովների, դասախոսությունների, վերապատրաստումների կազմակերպումն ու անցկացումն է:

***– Մի քանի խոսքով պատմեք ձեր առաջիկա ծրագրերի մասին:***

– Չնայած մեր կազմակերպությունը պետական գրանցում է ստացել բոլորովին վերջերս, այդուհանդերձ արդեն իրականացնում ենք զուգահեռ երկու հետաքրքիր նախագիծ. առաջինը Գյումրու ռուսական գրքի տան հետ անցկացնում ենք դասախոսությունների շարք «Հայ-ռուսական հարաբերություններ հայացք ներսից» խորագրով (ցայսօր անցկացրել ենք հինգ դասախոսություն հայ-ռուսական հարաբերություններից), երկրորդը՝ համագործակցելով տեղի հասարակական կազմակերպությունների հետ անցկացնում ենք հանդիպումների շարք ճանաչված և պատմության, քաղաքագիտության բնագավառներում մեծ ավանդ, ներդրում ունեցած մասնագետների հետ «Տարածաշրջանային զարգացումներ. արդի մոտեցումներ» խորագրով: Վերջինիս հյուրերն են եղել ադրբեջանագետ Անժելա Էլիբեգովան, դիվանագետ և հասարակական գործիչ Արա Պապյանը: Առաջիկայում շարունակելու ենք այս ծրագրերը, ինչպես նաև մասնակցելու ենք Ռուս համագործակցության կողմից անցկացվող և մեզ համար շատ կարևոր միջոցառումների շարքին. «Մեր ընդհանուր հաղթանակը» խորագրով՝ նվիրված Հայրենական մեծ պատերազմում հայերի մասնակցությանը: Կազմակերպելու ենք նաև մամլո ասուլիսներ, շնորհանդեսներ, պատմական էքսկուրսիաներ, զբաղվելու ենք նաև պատմամշակութային հուշարձանների պահպանության խնդիրներով: Այսպես, բոլորովին՝ վերջերս մասնակցեցինք ռադիոեթերի՝ նվիրված Գառնի տաճարի պահպանման խնդրին:

Առաջիկայում մեր հյուրն է լինելու «Հայատյացությունը Ադրբեջանում» (Армянофобия в Азербайджане) գրքի համահեղինակ Արմինե Ադիբեկյանը:

***– Հիմնականում ո՞ւմ հետ եք համագործակցում:***

– Կամզակերպությունը սերտորեն համագործակցում է մարզային հասարակական սեկտորի հետ, հատկապես երիտասարդների հիմնախնդիրներով զբաղվող ՀԿ-ների հետ, ինչպես նաև դեսպանատների, պետական մարմինների, դպրոցների և համայնքների ղեկավարների հետ:

***– Հայրենասեր մարդու Ձեր բնորոշումը:***

– Հայրենասիրությունն ինձ համար դժվար բնութագրվող, բարդ զգացողություն է: Այն թերևս բնագիծ է, նույնիսկ յուրատեսակ հոգեվիճակ. այն կամ կա, կամ չկա: Կարծում եմ չի կարելի լինել շատ կամ քիչ հայրենասեր: Յուրաքանչյուր ոք, ով ապրում և աշխատում է ի նպաստ հայրենիքի, հանապազօրյա ներդրում կատարելով հանուն սեփական ժողովրդի բարօրության թե՛ հոգևոր և թե՛ նյութական իմաստով, հայրենասեր է: Եվ այս պարագայում բոլորովին պարտադիր չեն վերամբարձ խոսքերն ու հայրենասիրական բանաստեղծություններ սերտելը:

***– Ի՞նչը կարող է միավորել հայրենասերներին:***

– Հայրենասեր մարդկանց միավորում է ազգային ինքնագիտակցությունը, հայրենիքի խնդիրները: Ցավոք պատմության ողջ ընթացքում հայ ժողովրդի միավորիչ ուժը եղել են պատերազմները. երբ օրհասական

➲25

24Ձ

վիճակ է ստեղծվել հայրենիքում, այժմ են միավորվել հայ հայրենասերները, ցանկանալով փրկել հայրենիքն օտար զավթիչներից: Հայի միավորչի ուժը թշնամու սպառնալիքն է:

***– Կա՞ մի բան, որ չասել չեք կարող:***

– Այո, ճշմարտությունը, հատկապես եթե խոսքը վերաբերում է մտերիմներին: Այլ պարագայում գերադասում եմ լռել, բայց ոչ երբեք ստել:

***– Հավատու՞մ եք, որ կգա համախմբման ժամանակները:***

– Կարծում եմ պատմության այս դժվարին ժամանակահատվածում, որը լի է բազում մարտահրավերներով՝ աշխարհաքաղաքական, ներքին և արտաքին, կրոնական, սոցիալական, տնտեսական, այնուամենայնիվ անդառնալի պառակտումը մեզ շրջանցեց: Այսօր առավել քան երբևէ հայ ժողովուրդը համախմբված, Սփյուռքի հետ միասին պայքարում է պատմական արդարության վերականգնման համար՝ հանուն Հայոց ցեղասպանության ճանաչման, հանուն հայոց պետականության զարգացման:

***– Ինչ՞ հասարակական պահանջ է դրված ձեր առջև:***

– Դեռևս ուսանողական տարիներին, որոնք համընկան ԽՍՀՄ փլուզման, անկախության ձեռքբերման, արցախյան պատերազմի տարիների հետ, իմ համակուրսեցիների հետ միասին նախաձեռնեցինք Պատմության ակումբի ստեղծումը, որը պետք է նպաստեր ուսանողների գիտական հմտությունների զարգացմանը, ինչպես նաև բացահայտեր թե՛ մեզ և թե՛ պարզապես պատմությամբ հետաքրքրվողների համար պատմության մութ էջերը: Տարիներ անց ինձ համար պարզ դարձավ, որ մեր ժամանակներում առավել քան երբևէ պահանջված է պատմական օբյեկտիվ վերլուծությունը, պատմության ճշմարիտ կողմերի բացահայտումը, հայոց պատմության որոշ անցքերի օբյեկտիվ վերանայումը, և, որ առավել կարևոր է երիտասարդների մեջ հայրենասիրության ոգին սերմանելը: Այսօր երկրում ստեղծված ծանր սոցիալ-տնտեսական պայմանների պատճառով շատերը կորցրել են հայրենիքի զգացողությունը, այն փոխակերպվել է բնակության վայրի զգացողության: Հատկապես երիտասարդները դարձել են ավելի պրագմատիկ՝ գերադասելով բարեկեցիկ կյանքն արտերկրում և հայրենիքը դիտելով զուտ որպես նախկին բնակության վայր: Գլոբալացման այս դրսևորման դեմ պայքարի միակ միջոցը թերևս մնում է հայրենասիրական դաստիարակությունը, որի կարևորագույն բաղադրիչը սեփական պատմության իմացությունն ու արժեվորումն է:

***– Ո՞րն է հայրենասերի տեղը մեր հասարակության մեջ:***

– Չէի ցանկանա զատել այս երկու հասկացությունը, քանզի մեր երկրում ապրող և արարող յուրաքանչյուր ոք արդեն իսկ հայրենասեր է:

***– Ինչ՞ երազանքներ կամ նպատակներ ունեք:***

– Պապերս Արևմտյան Հայաստանից ներգաղթյալներ են՝ հայրական կողմս Մուշից, մայրական կողմս՝ Բասենից: Եվ իմ մեջ, ինչպես երևի գրեթե յուրաքանչյուր հայի մեջ, մի անբացատրելի կարոտ կա իմ պապերի հայրենիքի հանդեպ: Երազանքս...Կուզեմ մի օր Մասիսն ազատագրված տեսնել, հայ եկեղեցիներն ու հոգևոր հզորությունը վերականգնված...

***– Իսկ մեր ավանդույթների հետ ինչպե՞ս վարվենք:***

– Ներկայիս մարտահրավերների պարագայում մեր հայկական ավանդույթները մեր պաշտպանական մեխանիզմն են, ուստի անհրաժեշտ եմ համարում դրանց պահպանումը, որը հային հայ է պահում, որտեղ էլ նա բնակվի:

***– Եթե կարողանայիք ժամանակը հետ տալ, ի՞նչ կփոխեիք Ձեր կյանքում:***

– Կարծում եմ կապրեի նույն ձևով՝ հասարակական, գիտական լիարժեք կյանքով:

***– Ինչ՞ն է տարանջատում հայրենասերներին ու պատմաբաններին:***

– Բարեբախտաբար դեռ չեմ հանդիպել պատմաբանի այդ տեսակին և կարծում եմ, որ չկա պատմաբան, որը ուսումնասիրելով, իմանալով մեր պատմական անցյալը, մեր ձեռքբերումներն ու կորուստները, մեր մեծարժեք պատմամշակութային կոթողները, զերծ լինի հայրենասիրությունից: Պատմաբանի մասնագիտությունն ընտրում են հայրենասերներն ու նվիրյալները:

***– Խոսք ուղղված ձեր բոլոր ընկերներին ու մեր երիտասարդ պատմաբաններին:***

– Աշխատենք հօգուտ հայրենիքի, հնարավորինս զերծ մնանք օտար բացասական ազդեցությունից, լինենք օբյեկտիվ գնահատականներում, և որ ամենակարևորն է՝ հիշենք պատմության դասերը:

***Գարիկ ԱՎԵՏԻՍՅԱՆ***

# Եթե խելքի չգանք

«Վաճառվում են պետական պաշտոնները, շքանշաններն ու կոչումները: Նահանգները, գավառներն ու նախարարական պաշտոնները վաճառեցին ամեն տեսակի ապիկար մարդկանց, ծախեցին գետերը, հանքերը, երկրամասերը և սահմանները, ամենացածր գնով ծախեցին ժողովրդի բոլոր իրավունքները, երկրի առևտուրն ու պետության անկախությունը և ահա հիմա, արևելյան շուկայի հնավաճառների նման, ծախում են հորինված պետական տիտղոսները, շինծու առանձնաշնորհները կամ պետական կնիքով հաստատված վավերագրերը... Բոլոր երկրամասերը անկում են ապրում: Ժողովուրդը փախչում է երկրից: Մեր դպրոցները վեր են ածվել ավերակների... Մեր օրենքները տխմարների հիմար քմահաճույքի արդյունք են: Բարոյականությունն ընկել է: Մենք զրկվել ենք ունեցվածքից, կյանքի ապահովության համոզվածությունից: Երկիրն ամբողջությամբ մի բանտ է: Ժողովուրդն իսկապե՞ս մահացել է, որ դուք նրա ժառանգությունն աճուրդի եք հանել: Եթե խելքի չգանք՝ ստիպված կլինենք համբուրել օտար զինվորների կոշիկները»:



***ՄԻՐԶԱ ՄԱԼՔՈՄ ԽԱՆ 1864 թ.***

*Իրանահայ նշանավոր դիվանագետ (1833 Իրան – 1906 Շվեյցարիա)*

# ՀԱՅԸ

**Ամեն մի հայ, առանձին վերցրած, առյուծ է, ինչպես և խելքով ու դատողությամբ՝ հսկա: Բայց ընկերական ոգու բացակայությունը խմբովին գործելիս չլատում է նրա ուժերը: Զգե՛ք մենակ հային վտանգների փոթորկի մեջ, նա արժանավորապես կպաշտպանի յուր գլուխը: Բայց խմբե՛ք մի քանի հայեր միասին, և նրանք, պաշտպանվելու կամ հարձակվելու փոխարեն, կսկսեն խորհել, մտածել, հակաճառել և, վերջապես, թշնամուն թողած՝ միմյանց միսն ուտել: Այո՛, անհատականությունը հայի գլխավոր թշնամին է: Արդյո՞ք մեր ազգի մտավոր առաջնորդները կկարողանան մի փոքր հիմարացնել անհատ հային և խելոքացնել ընկերական հային: Եթե այդ եղավ, մենք կարող ենք ապագա ունենալ, եթե ոչ՝ կորած ենք...**

***ՐԱՖՖԻ***

# ԸՆԿԵՐՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՀԱՅՐԵՆԻՔ

**Ընկերը կնքահոր նման ընտրովի բարեկամ է: Տարբերությունն այն է, որ մի կնքահայր կարող ես ունենալ եւ կնքահոր համար պատասխանատվություն չես կրում, նա է իր սանիկի համար Աստծո եւ հանրության առաջ պատասխանատու: Ընկերներ ունես այնքան, որքան մարդու ընկեր կարող ես լինել: Ընկերներդ այնպիսին են, ինչպիսի ընկեր դու ես: Եթե կամենում ես ընկեր ունենալ, ընկերոջիցդ ակնկալիր այնքան, որքան դու ես պատրաստ նրա համար անել: Համոզված եմ, որ անձի մարդկային որակները չափորոշող-գնահատողները նրա ձեռքբերած ընկերներն են ու նրանց վերաբերմունքն իրենց ընկերոջը:**

**Արդեն կյանքիս վեցերորդ տասնամյակն եմ ամփոփում հայրենիքում: Այսօր՝ մանկապատանեկան, դպրոցական, ուսանողական, բանակային, աշխատանքային ընկերներիս մեծամասնությունը հայրենիքից դուրս են կյանքը շարունակում, զավակներին ամուսնացնում, թոռներ գուրգուրում: Ոմանք անգամ այլ երկրներում հաջողության են հասնում՝ գնահատվում ու կարեւորվում: Ոմանք նույնիսկ հարստանում ու մեծ կարողության տեր են դառնում: Սակայն լրիվ երջանիկ լինելու համար ինչ-որ կարեւոր, շատ կարեւոր մի բան պակասում է մեր հայրենակիցներին: Դա հող ու ջրի, մեր բնության ու արեւի պակասությունը չէ: Հող, ջուր, բնություն ու արեւ բոլոր երկրներում էլ կա, սակայն մարդը աննկարագրելի ներքին մի ապրում ունի, հոգու անհատնում մի պահանջ, որ իրեն ճանաչող, իր տեսուճանաչ մարդիկ տեսնեն, որ ինքն ապրում է ու լավ է ապրում: Եվ այդ է պատճառը, որ հոգին կեղեքող կարոտը պարպելու նպատակով իր ծննդավայրը վերադարձող օտար ափերում բախտ որոնողները երբեւէ չեն խոստովանում, որ անհայրենիք, անընկեր ու անբարեկամ օտարության մեջ ապրելն ընդամենը գոյատեւել է, տխուր մի իրականություն, որի հետ մի կերպ հաշտվում ես ինքդ քեզ հետ կռիվ տալով:**

**Ինչեւէ, կյանքը շարունակվում է, նորին գերազանցություն «Կարոտ»-ը բարգավաճում է՝ գնացածները համակերպվում են, մնացածները դիմանում՝ հուսալով, որ լավ օրեր կգան, գնացածները կվերադառնան եւ հայ ժողովուրդը կազատագրվի «կարոտ»-ի տիրապետությունից ու հոգի կեղեքող դաժան լծից:**

**Շատ եմ խորհել այս առեղծվածային երեւույթի շուրջ, անքուն գիշերներ անցկացրել իրավիճակից ելք փնտրելով: Քանի անգամ փորձել եմ մտորումներս գրավոր շարադրել, սակայն գիրս մնացել է անավարտ, անկարողությունից վրդովված անմեղ թղթին կտոր-կտոր եմ արել:**

* * *

Սովորական աշխատանքային կիրակի է... խմբագրատանը թերթում եմ «Մաշտոց» հանդես» քառահատորը... ապրված օրերը կինոժապավենի պես արագընթաց անցնում են միջովս... վերհիշում եմ, հիանում, ակամա փառավորվում կամ հուզվում ապրածիս առանձին դրվագներից:

Գրասեղանին դրված բջջային հեռախոսս ղողանջեց... Ռուսաստանից հորը խնամելու նպատակով տուն վերադարձած ընկերս էր՝ Հրաչ Առաքելյանը.

– Որտե՞ղ ես, քանի՞ րոպեից կարող ես հրապարակում լինել, քեզ համար անչափ հաճելի անակնկալ ունեմ:

– Գործատեղում եմ, հինգ րոպեից քաղաքապետարանի մուտքի մոտ կլինեմ:

Անմիջապես գիր ու գրականությունը մի կողմ դրեցի և դուրս եկա աշխատավայրից՝ քայլելով դեպի հրապարակ: Հեռվից նկատեցի, որ Հրաչի կողքին, բաց գույնի կոստյումով, սպիտակահեր, կոկիկ հագնված մի տղամարդ է կանգնած: Քայլերս արագացրեցի, որովհետև Հրաչի կողքին Լևոն Միրզոյանն էր, իմ վաղեմի ընկերներից, ում հետ ծառայել էինք Սովետական բանակում և երկար տարիներ հարևան հիմնարկներում աշխատելով ընկերություն արել, սակայն արդեն երկու տասնամյակ չէինք հանդիպել, որովհետև նա էլ շատերի պես իր կյանքը շարունակում էր օտար ափերում: Իրոք, Լևոնն էր, սափրված, սպիտակ վերնաշապիկով, կոշիկները թաշկինակով մաքրած (ինչպես բանակում ծառայության ժամանակ «սապոկներն» էր մաքրում): Մի խոսքով, ինչպես կոմսոմոլի կենտկոմի քարտուղար՝ կոկիկ ու պաշտոնական:

«Կարոտ»-ը բոցավառվեց՝ գրկախառնվեցինք, համբուրվեցինք և, բնականաբար, հարկ էր կարգին նշել ու արժևորել մեր հանդիպումը: Լևոնն, ինչպես միշտ, օպտիմալ տարբերակ առաջարկեց՝ գնալ Դիլիջան, մեր մյուս բանակային ընկերոջը նույնպես տեսնել, Հաղարծինում մոմ վառել ու փառք տալ Աստծուն, որ կյանք ունենք ու ապրում ենք: Առաջարկությունը միանգամայն ընդունելի էր, սակայն ես էլ Ջիմիկին շատ վաղուց չէի հանդիպել ու տեղյակ չէի անգամ՝ մեր ընկերը Դիլիջանու՞մ է, թե՞ նա էլ է օտար ափերում



բախտ որոնում: Կարոտը հզոր խթան է, և իրավիճակից ելքը գտնվեց: Զանգեցինք Ջիմիկի՝ Արամ Օդաբաշյանի ուսանողական տարիների ընկերոջը՝ Կարլեն Բադյանին և առաջարկեցինք միասին գնալ Դիլիջան՝ Ջիմիկին տեսնելու:

Լևոնի եղբոր որդու՝ Մեսրոպի ավտոմեքենայով մեկնեցինք Դիլիջան: Կարլենը հեռախոսով կապվել էր Ջիմիկի հետ, և պայմանավորվել էին մեկ ժամից հանդիպել խանութում: Սովետական բանակի ճագարաբույծ սերժանտ Օդաբաշյանը Դիլիջանում խանութ ուներ և բարգավաճել ու «դուքանապետ» էր դարձել:

Հանդիպումը կայացավ «դուքանի» դռների դիմաց: Ճիշտ է փողային նվագախումբ չկար, սակայն «դուքանապետի» ժպիտն ու ջերմորեն ողջագուրվելը հասունացած սոցիալիզմի տարիների «Գենսեկի» ու «Կոմենդանտեի» հանդիպումները հիշեցրեցին:

Արամ «դուքանապետը» էլ այն ուսանողական տարիների սև ու խուճուճ մազերով Ջիմիկը (այն օրերի Ջիմի Հենրիքսը) չէր: Մազերն ասես սպիտակեցրած ու արդուկած լինեին, մի քիչ էլ փեդռած ու կարճ կտրած: Այն օրերի բարակ-մարակ երիտասարդը մարմինն ու փորը տեղը տղամարդ էր արդեն՝ կարգին պապիկ: Ջիմիկ պապիկը հին օրերի պես առաջարկեց առանց ժամանակ վատնելու միանգամից «գեղարվեստական» մասին անցնել, շնչակտուր թվարկելով տարածաշրջանի ճոխ խորտկարանները՝ մի պահ մոռանալով, որ ընկեր պապիկները էլ նախկին ախորժակն ու առողջությունը չունեն:





* * *

Օրվա «հյուրը» Լևոնն էր, և նրա կամքն օրենք էր... Ճանապարհվեցինք արաբական շեյխի միջոցներով նորանորոգ Հաղարծին վանքային համալիր՝ մոմավառության: Ճանապարհին սերժանտ-ճագարաբույծը Լևոնշինարարին հարցրեց.

– Պարոն Լևոն Բագրատի«չ» չորս տասնամյակ առաջ դու օրինավոր կոմունիստ, բանակում էլ հատուկ բաժնի փառապանծ զինվոր էիր, այդ Կուրսկում ինչքա՞ն մեղք ես գործել, որ այս փահլևան տղերքին «մեղքերիդ» թողության համար «սոված-ծարավ» Հաղարծին մոմ վառելու ես տանում:

– Ա՛յ, ճագարաբույծ «գեներալ», դու մինչև այսօր դեռ ճշմարիտ հավատքի չես եկել, բանակում ավագ ճագարաբույծ Բարսեղի և կոմերսանտ Սիմոնի հետ այդքան ճագարը

→27



26⊃

կերաք ու դեռ «սոված-ծարավ» ես: Ի դեպ, բանակում ինձ այդպես էլ չվիճակվեց ձեր բուծած ճագարների մսից ճաշակել: Դու պետք է, որ խանութումդ էլ ճագար պահելիս լինես: Դեռ այն երանելի օրերից ի վեր սիրտս ճագարի միս է ուզում ու քո համակուրսեցի ինժեներ-կոմերսանտ Սիմոնի սարքած «սամագոն»:

– Լևոն Բագրատի, ես որքան հասկացա, քո ախորժակը դեռ նախկինն է, սակայն Հաղարծինում քեզ կարող եմ միայն ջրի «ճագար» առաջարկել: Մոմերդ վանքում վառիր, անթիվ-անհամար մեղքերիդ համար թողություն խնդրիր, իսկ վերադառնալիս ընկերոջդ «ճագարների» մսից կհամտեսես, եթե քեզ խելոք պահես:

«Մեղքաշատ զորքն» այսպես «լեզվակռիվ» տալով հասավ Հաղարծին: Մոմ վառեցին, ով ինչքան կարող էր մտքում աղոթեց և Լևոն-շինարարը «սոված-ծարավ զորքը» առանց կռիվ տալու հանձնեց տանկիստ-ճագարաբույծին:

Լեգենդար տանկիստի նոր «ճագարաբուծարանը» Հաղարծնի մոտակայքում հոսող զուլալ գետակի ափին էր՝ զով ու չքնաղ մի տարածք, որտեղ կառուցած փոքրիկ ջրավազանում «Իշխան» ձուկ էին բուծում:

Լևոն-շինարարը ջրավազանում լողացող «Իշխան ճագարներից» մի քանիսին ցանցով հանեց ու ձկնաբուծին կարգադրեց եփել ու մատուցել գետակի ափին տեղադրված սեղանին, որի շուրջ «սոված-ծարավ զորքը» ոտքի վրա, հաց ու պանրով արդեն օղու շիշը դատարկել էր: «Իշխան ճագարները» եփվեցին, մատուցվեցին, շատ համեղ էր, հաճույքով ճաշակեցինք: Լևոնը ձկնաբույծին խնդրեց, որ մի քանի խոշոր ձուկ էլ բռնեն, մաքրեն ու դնեն ավտոմեքենայի բեռնախցիկը:

Օրը վերածվեց Տանկիստի Օրվա ու Ընկերության Տոնի: Հիշեցինք Սովետական բանակում ծառայությունից հետո ապրած երանելի այն տարիները, երբ ամեն տարի «տանկիստներով» հավաքվում էինք Սամվելի հայրիկի՝ Սովետական բանակի մայոր Ղուկասյանի՝ Գեներալի, Ստեփանավանի շրջանի Հոբարձի գյուղում կառուցած ամառանոցում և երեք օր ու գիշեր տոնում «Տանկիստի Օրը»: Հոբարձի գուղում մեր երկրի տարբեր բնակավայրերից, տարբեր գույնի այնքան «տանկ» ավտոմեքենա էր հավաքվում, որ ամառանոցամերձ ճանապարհը փակվում էր: Առաջին օրը երկու-երեք տասնյակ տանկիստները մինչև վերջին կաթիլը ռեալիզացնում էին թիկունքի ծառայության մայոր-գեներալի նկուղներում պահեստավորած մրգի օղին, իսկ առավոտյան ներկայանում էին տանկիստներիս պաշարած գյուղի փահլևանները՝ իրենց մառանի օղիով, ոմանք էլ գոմում կամ հավաբնում եղած կենդանի խորդկացուով: Գյուղը «պաշարողներս», դեռ այն կոմունիզմի տարիներից «ժողովրդավար» էինք, ոչ մեկին չէինք նեղացնում՝ մի թեյի բաժակ օղի էինք տալիս ու նստեցնում Մեծ Սեղանի կողքը: Ով դիմանում էր, մեզ հետ շարունակում էր, իսկ ով «զոհվում էր» տանից մարդ էին կանչում, որ իրենց «քաջին» տուն տանեն: «Զոհեր» նաև տանկիստներիս շարքերում էին լինում: Մայոր-գեներալի ննջարանը երկրորդ օրը ծառայում էր որպես «գոսպիտալ»: Գլխավոր բժիշկը մայոր-գեներալի Տիրուհին էր՝ Աղուն մայրիկը, ում ձեռքի տակ ունեցած միակ դեղամիջոցը սառը թանն էր, որ ամենից շատ իր սիրելի ավագ որդուն՝ Սամվելին էր խմացնում և տանկիստներիս խնդրում, որ Սամվելի փոխարեն Սաշկոին խմացնենք՝ պատճառաբանելով, որ կրտսեր որդին «գլուխը հաստ» զինվորական է, դեռ մանկուց հոր հետ խմելու սովոր է՝ կդիմանա:

Բոլոր տանկիստներին հատ-հատ հիշեցինք՝ Գագիկ Նավոյան, Արթուր Գրիգորյան, Գագիկ Պողոսյան, Սիմոն Գալստյան, Գագիկ Կարապետյան, Յուրա Բաղրամյան, Դավիթ Չիտչյան... և ներկաներս:

Արդեն ուշ երեկո էր, երբ պատշաճ վայելած ճանապարհվեցինք Վանաձոր: Դիլիջանում մեծ դժվարությամբ հաջողվեց բաժանվել մեր տանկիստ-ճագարաբույծից՝ խոստանալով, որ վաղը կվերադառնանք և կշարունակենք խնջույքը, կճաշակենք նաև Արամ «դուքանապետ-որսորդի» որսած նապաստակի միսը և իր քաշած վայրի տանձի օղին:

* * *

Վերադառնալով Վանաձոր՝ պայմանավորվեցինք վաղը ժամ 11-ին հանդիպել «Մաշտոց»-անոցում:

Առավոտյան, պայմանավորված ժամին աշխատասենյակիս դուռն առանց թակելու բացեց Լևոն-շինարարը.

– Բարև փոշմնած վարժապետին, այս ինչքա՞ն ես ծխել, այս տնակը խմբագրատուն է, թե՞ ծխարան, մեղք չե՞ս...

– Լևոն-շինարար, մեզ էլ հայրենիքի ծուխը ծխացնելն է մնացել... Այ, հենց բոլորդ վերադառնաք ու սկսեք մեր երկրում կառուցել, ծխելը կթողնեմ ու միայն «քեֆ» կանեմ:

– Դու կարծես առանց կառուցելու էլ ես «քեֆ» անում, սերտիֆիկացված սեղանապետ ես, երեկ այնպիսի հոգեցունց բաժակաճառեր ասիր, որ Զիմիկ«ս» քոռ ու փուչ եղավ, գիշերվա կեսին ճագարի որսի էր հրավիրում, դու էլ խոստացար, որ այսօր հրացանով կներկայանաս հրամանատար-որսորդին և երեկոյան Դիլիջանի անտառների նապաստակ կճաշակենք:

– Ես, որ խոստացած ու հավաստիացրած չլինեի, որ այսօր որսի գնալու նպատակով վերադառնալու ենք, դու դեռ Դիլիջանում կլինեիր և կարծում եմ, առնվազն մեկ շաբաթ որսկան-ճագարաբույծը մեզ նապաստակի որսի կտաներ, դու հաստատ չէիր դիմանա:

Լևոնը, իր սովորության համաձայն, կոլտնտեսության նախագահի պես ձեռքերը հետևին դրած շրջում էր խմբագրատանը և ուշադիր զննում պատերից կախված գեղանկարչական աշխատանքները: Ռուսյի շինարարը բավականին երկար կանգ առավ Ռուբեն Սուլվարու «Աշուն» կտավի առաջ.

– Խմբագրապետ, այս քո գործն է, դու բանակում կոմկուսի շարքերն անցնելու համար տառապելով պլակատ էիր գրում ու վանդակներ գծած հարթության մեջ Վլադիմիր Իլյիչին մեծացրած պատկերում-ներկում, իսկ այսօր արդեն կարգին նկարիչ ես:

– Լևոն Բագրատի«չ», ես, որ այդքան նկարել կարողանայի, էլ գիր ու միր կամ վարժապետություն կանեի՞: Այդ կտավները «Մաշտոց» գեղարվեստի ֆոնդին նկարիչների ընծայած ստեղծագործություններ են: Այդպիսի շուրջ 200 ստեղծագործություն կա մեր «Մաշտոց» ֆոնդում: Այդ գործերի մեծ մասը տպագրված են «Մաշտոց» հանդեսի շապիկներին, ցավոք չեմ կարողացել մեր գեղարվեստի ֆոնդի պատկերագիրք լույս ընծայել, թե չէ սիրով կնվիրեի Կուրսկի մարզը շենացնողին:

– Էլ մի լացացնի, ես ճագարաբույծ-որսորդ չեմ, այս կտավն առգրավում եմ, որ Կուրսկ տանեմ, աշխատասենյակումս կախեմ, այցելուներս տեսնեն, թե ինչպիսի մշակույթ ունեցող երկրից եմ սերում և, որպես «Մաշտոց» կրթամշակութային կենտրոնի լիազոր ներկայացուցիչ, կարողանամ կարգին գործել:

– Լևոն, կարգին գործելու համար քո թագավորական անունն էլ բավական է: Այդ կտավը, եթե իմ նկարածը կամ իմ անձնական սեփականությունը լիներ՝ սիրով կնվիրեի, սակայն ֆոնդի սեփականությունը օտարելու համար պարտավոր եմ համաձայնեցնել «Մաշտոց» ՀԿ նախագահության և նվիրատու գեղանկարչի հետ: Այսօր երեք ժամից նախագահության նիստ ենք գումարելու, նկարչին էլ կհրավիրեմ, կքննարկենք, կորոշենք:

Երկխոսությունն ընդհատվեց, որովհետև խմբագրատուն ներխուժեցին Հրաչն ու Կարլենը: Ուշանալու համար ներողություն խնդրեցին՝ առաջարկելով, որ իրենց հնարավորություն ընձեռվի մեղքերը քավեն մոտակա սրճարանում:

⊃28

